Պրոլետարներ բոլոր երկրների,
միացեք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
բաժնի ագիտացիայի սեկ.

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 4 (11)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ — 1935

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացեք.

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 4 (11)




ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Սով. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ

Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սրբ. Մ. Սուքյան և Մ. Գևորգյան

Հրատարակություն № 7 Պատվեր № 243

Գլավլիտի լիազոր՝ № 2258

Տիրաժ 10,038

Պետհրատի տպարան, Յերևան


# ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԻՑ ԱՆԵԼ ԲՈԼՈՐ ՀԵՏԵՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հակախորհրդային տրոցկիստական կենտրոնի դատավարությունն ավարտված է: Մերկացված է տրոցկիստների՝ ֆաշիստական պահնորդական բաժինների անարգ գործակալների դիվերսիոն, լրտեսական, տեռորիստական ու վնասարարական գործունեությունը: Գերագույն դատարանի դատավճիռը, վորին հավանություն տվին Խորհրդային Միության ժողովուրդները, ի կատար է ածված:

Բանվորներն ու ինժեներները ձեռնարկել են վնասարարության հետևանքների վերացման արդյունաբերության ու տրանսպորտի այն ձեռնարկություններում, վորտեղ դավաճաններին հաջողվել եր թափանցել, վորտեղ կատարվել եյին դիվերսիոն ու վնասարարական գործողություններ: Յերկիրն ստեղծագործական նոր վերելքով, ստախանովյան նոր ռեկորդներով պատասխանեց տրոցկիստների ստոր, վնասարարական, քայքայիչ աշխատանքին:

Մասսաների համար ավելի տրոցկիս-տական բանդիտների անալոգ վոհմակը չկարողացավ կանգնեցնել արդյունաբերության ու յերկաթուղային տրանսպորտի անշեղ, հաղթական առաջխաղացումը։ Ժողովրդական տնտեսության խոշորագույն ճյուղերը, չնայած վնասարարությանը, հնգամյակը կատարեցին չորս տարում։ Բայց փաստը հաստատված է՝ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում տեղի յե ունեցել վնասարարություն. վնասարարական գործողություններից մի քանիսը դատարանում ցինիկ կերպով պատմում եյին մեղադրյալները, այդ փաստերը հաստատված են նաև եքսպերտիզայի կողմից։

Ապացուցված է, վոր Կուզբասում, Դոնբասում և մյուս ածխային ավազաններում ձեռնարկված հանքային նոր հոյակապ շինարարությունը դիտավորյալ կերպով արգելակվում եր, ձգձգվում, թանգացվում եր, կլանում եր ավելորդ ուժեր ու միջոցներ։

Ապացուցված է, վոր մեր հզոր կոքսաքիմիական արդյունաբերությունը, վորն ստեղծվել ու մեծ հաղթանակներ է տարել վերջին տասը տարվա ընթացքում, ներկա-



յումս հասած կլիներ զարգացման ել ավելի բարձր աստիճանի, յեթե նրա վրա իրենց կեղտոտ թաթը չդնեյին Պյատակովը, Ռատայչակը և նրանց ոգնությամբ՝ գերմանական հետախուզությունը։

Ապացուցված է, վոր այնպիսի հսկաների շինարարությունը, ինչպես Ուրալվագոնստրոյը և Սրեդուրալմեդստրոյը, Պյատակովների, Մարյասինների, Կոլեգաևների և նրանց նման տրոցկիստական բանդիտների վորոշմամբ ձգձգվում եր ի վնաս տնտեսության և յերկրի պաշտպանության։

Ինչպես այժմ հաստատված է, գիտակցաբար սինթետիկ կաուչուկի ըկտի սաբոտաժ է կատարել ռետինի արդյունաբերության նախկին ղեկավար տրոցկիստ Բիլիկերը, հակահարվածի չհանդիպելով ռետինի արդյունաբերության գործարանների կողմից, չնայած վոր այդ գործարանների աշխատողների համար պարզ եր, թե ինչպիսի նշանակություն ունի հումքի այդ տեսակը։ Միայն ծանր արդյունաբերության ժողկոմ ընկեր Որջոնիկիձեյի անմիջական միջամտությունը կոտրեց սինթետիկ կաուչուկի յուրացման նկատմամբ յեղած սաբոտաժը։

Բայց ռետինի արդյունաբերության մեջ էլ վնասարարները քիչ բան չեն կատարել:

Իսկ ինչպե՞ս էր դրությունը տրանսպորտում: Դատավարությունը յերևան բերեց, թե վնասարարներն ինչպես եյին փոխադրումների վիժեցման նպատակը հետապնդող իրենց գործունեյությունը դիմակավորում «սահմանային նորմաներով»: Տրանսպորտում վորքա՜ն մարդիկ, վնասարարության անմեղսակից անտեսավարներ, ինժեներներ ու տեխնիկներ տարիներ շարունակ թույլ են տվել, վոր սահմանի «տեսաբանները» քթից բռնած պար ածեն իրենց: Հարկ չկա խոսելու նրանց մասին, ովքեր գիտակի իմաստուն տեսքով պաշտպանում եյին այդ նորմաները, գիտակցաբար և անգիտակցաբար կիրառելով վնասարարական դրույթները: Այդ ամոթալի դրությանը վերջ տրվեց միայն ընկեր Լ. Մ. Կագանովիչի տրանսպորտ գալով, վորն արագորեն կարողացավ ճանաչել սահմանային նորմաների պաշտպանների եյությունը և տրանսպորտի լավագույն մարդկանց՝ ստախանովականների հետ միասին ջախջախեց վնասարարական նորմաները:

Այս և այլ փաստեր ցույց են տալիս,



վոր մի շարք ձեռնարկություններում ու տնտեսության ճյուղերում վատ է դրված յեղել կուսակցական աշխատանքը, բոլշևիկյան ինքնաքննադատությունը բավականաչափ ծավալված չի յեղել: Բացահայտ վնասարարական բնույթի փաստերի նկատմամբ ավելի ուշադիր լինելու կոչող ձայները հաճախ հարկ յեղած պաշտպանություն չեն գտել: Մանր բուրժուական ըստորաքարշությունը ցեխի, գործարանի վարչության կամ գլխավոր վարչության հանդեպ՝ յերբեմն բթացնում եր զգաստությունը. կեղծ «գիտական» հեղինակությունների առջև խոնարհվելը հաճախ հասցնում եր ժողովրդական տնտեսության և մեր յերկրի պաշտպանունակության շահերի մոռացության:

Ինժեների, տեխնիկի, վարպետի սուր աչքը չեր կարող չնկատել մի շարք խայտառակություններ, ուղղակի տեխնիկական այլանդակություններ: Բայց փոխանակ ամբողջ ձայնով աղաղակելու այդ խայտառակությունների մասին, փոխանակ յերևան բերելու թերությունների ու ավարիաների իսկական պատճառները, արդյունաբերության ու տրանսպորտի վոչ փոքր թվով աշ-

խոսողներ սահմանափակվել են փաստերի պասիվ արձանագրումով, թերությունների համար արդարացումներ փորձելով:

Վնասարարության հետևանքների վերացումը պահանջում է նախ և առաջ հրաժարվել այդ պասիվությունից, արտադրության մեջ գոյություն ունեցող խայտառակությունների ու խառնաշփոթության նկատմամբ քաղքենիական վերաբերմունք ցուցաբերելուց: Բոլշևիկյան ինքնաքննադատությունը, վորին բազմիցս կոչել է մեզ ընկեր Ստալինը, պետք է ծավալվի հատուկ ուժով: Կուսակցական կազմակերպությունները հատուկ պատասխանատվություն են կրում և պետք է դատավարությունից քաղեն բոլոր դասերը:

Նորից պետք է վերանայվեն այն տեխնիկական նախագծերը, հաշիվները, նախահաշիվները, վորոնք կազմված են յեղել վնասարարների ձեռքով: Ինժեներների ու տեխնիկների, ստախանովական բանվորների ու հարվածայինների պարտքն է արտադրական խորհրդակցություններում խիստ քննադատության յենթարկել այն ամենը, ինչ մինչև այժմ կատարվել է նրանց ձեռնարկություններում վնասարարների առա-



ջարկությամբ: Միայն այս ճանապարհով հնարավոր կլինի մերկացնել ու մինչև վերջը յերևան բերել կատարված բոլոր խայտառակությունները և բոլշևիկյան արագ ու յեռանդուն թափով վերացնել դրանք:

Հակախորհրդային տրոցկիստական կենտրոնի դատավարությունը մի անգամ ևս ակնբախորեն ցույց տվեց աշխատավորներին, թե ներկայիս պայմաններում ինչ է նշանակում բոլշևիկյան զգաստությունը: Այդ մասին ճիշտ ասացին Մոսկվայի «Սերպ ի Մոլոտ» գործարանի աշխատողները՝ ԽՍՀՄ-ի բանվորներին ուղղած իրենց դիմումի մեջ, վորն որերս հրապարակվեց «Պրավդա»-յում:

«... Վոչ մի թերություն, վոչ մի ավարիա,— գրում եյին «Սերպ ի Մոլոտ»-ի աշխատողները,— չպետք է անցնի մեզ համար աննկատելի: Մենք գիտենք, վոր ագրեգատներն իրենք իրենց չեն կանգ առնում, դազգյահներն իրենք իրենց չեն կոտրվում, կաթսաներն իրենք իրենց չեն պայթում: Յուրաքանչյուր այդպիսի ակտի հետևում թաքնված է ինչ վոր մեկի ձեռքը: Արդյո՞ք թշնամու ձեռքը չէ այդ — ահա առաջին հարցը, վոր այդպիսի դեպքերում պետք է

ծագի մեղնից յուրաքանչյուրի մեջ»:

Վնասարարության հետևանքների վերացման գործում մեծ է նաև մամուլի դերը: Մեր մամուլը շատ բան է արել ստախանովյան շարժումը ծավալելու համար, լավագույն մարդկանց փորձի պրոպագանդի և հանուն պլանների կատարման ու գերակատարման պայքարելու համար: Նա կատարել է նաև մերկացնող աշխատանք, յերևան է բերել խայտառակությունները, բայց, ինչպես յերևում է, բնավ վոչ բավարար չափով: Տրոցկիստական բանդիտները, ճապոնական ու գերմանական լրտեսները հաճախ անպատիժ կերպով կատարել են իրենց ստոր գործերը: Ժողկոմատները, տեղական կազմակերպություններն ու մամուլն իսկական զգուշություն ու զգաստություն չեն ցուցաբերել նրանց նկատմամբ: Կարելի յե բերել շատ որինակներ, յերբ մերկացնող նյութը, առանձնապես այնպիսի նյութ, վորն ուղղված է յեղել խոշոր տնտեսվարների դեմ (յերկաթուղիների պետերի, շինարարությունների ու ձեռնարկությունների ղեկավարների դեմ) ուղարկվել է բնավ վոչ ըստ պատկանելույն և ընկել է վնասարարների ձեռքը: Նույնիսկ այն ժա-



մանակ, յերբ նյութը տպագրվել է, թերթերը միշտ չեն, վոր կարողացել են գործը հասցնել մինչև վերջ և հաղորդվող փաստի հետևում յերևան բերել հանցագործության, վնասարարության պատկերը:

Առանձնապես խիստ պետք է դնել կադրերի ընտրության հարցը, այնպիսի ընտրության, վորն ապահովի տրոցկիստական-լրտեսական գործերի կրկնության անհնարինությունը: Անքննադատ վերաբերմունքը մարդկանց նկատմամբ արտահայտվել է նաև այն բանում, վոր յերբեմն շքանշաններով պարգևատրելու համար ներկայացվել են այնպիսի մարդիկ, ովքեր վնասարարությամբ են զբաղվելիս յեղել ժողովրդական տնտեսության մեջ: Ժողկոմատներն ու տեղական կուսակցական կազմակերպությունները շատ բան ունեն, վորոնց վրա պետք է մտածեն ու աշխատեն:

Մեծ է մեր յերկրի աշխատավորների ստեղծագործական վերելքը: Աճում և լայնանում է հուժկու ստախանովյան շարժումը, յուրաքանչյուր որ առաջ են քաշվում փայլուն աշխատողների նոր անուններ, աշխատողներ, վորոնք սահմանում են աշխատանքի արտադրողականության նորանոր

ռեկորդներ: Բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի մեջ աճում է պատասխանատվության զգացումը յերկրի հանդեպ, իրենց մեծ սոցիալիստական Հայրենիքի հանդեպ:

Վնասարարների կողմից սոցիալիստական տնտեսությանը հասցված վնասը յեռապատիկ կերպով կհատուցվի ամենակարճ ժամկետներում: Յերկիրն իրավունք ունի սպասելու, վոր այն ձեռնարկությունները, վորտեղ գործել է թշնամու ձեռքը, շուտով կկարողանան ռապորտ տալ կուսակցությանն ու կառավարությանը՝ վնասարարության հետևանքները լիակատար ու վերջնականապես վերացնելու և տնտեսական նոր հաղթանակներ ձեռք բերելու մասին, հաղթանակներ, վորոնք ամրապնդում են մեր մեծ Հայրենիքի հզորությունը:

(«ՊՐԱՎԴԱ»-յի փետրվարի 2-ի առաջնորդողը)





## ԺՈՂՈՎՐԴԻ ՎԱՅՐԱԳ ԹՇՆԱՄԻՆԵՐԻ՝ ՏՐՈՑԿԻՍՏՆԵՐԻ ՆՊԱՏԱԿՆԵՐՆ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐԸ

Հակասովետական տրոցկիստական կենտրոնի—Պյատակովի, Ռադեկի, Սոկոլնիկովի, Սերեբրյակովի ու մյուսների գործի դատավարությունը և այդ գործի առթիվ ԽՍՀ Միության Գերագույն դատարանի զինվորական կոլեգիայի կայացրած դատավճիռը ցայտուն ու սպառիչ կերպով յերևան բերին ժողովրդի զազրագույն և ամենավտանգավոր թշնամիների—գայլերի վոհմակի պետական դավաճանության ստոր մատնությունների, լրտեսության և այլ անորինակ հանցագործությունների ամբողջ խորությունը:

Նրանց գլխավոր խնդիրը, նրանց բաղձալի նպատակն եր խորհրդային կառավարության տապալումը և ԽՍՀՄ-ում գոյություն ունեցող սոցիալիստական կարգերի փոփոխումը: Ոտարերկրյա ավինների ոգնությամբ իշխանության գրավումը նրանց հարկավոր եր մեր յերկրում կապիտալիզմը

վերականգնելու համար: Զինովյևը, Կամենևը, Սմիրնովը և տրոցկիստական-զինովյևական տեռորիստական կենտրոնի մյուս մասնակիցները ստում եյին դատարանում, ասելով, թե իրենք ղեկավարվել յեն միայն իշխանության ծարավով:

Սպիտակ-գվարդիական տեռորը յերբեք չի յեղել անծրագիր: Յերբ եսերները կրակեցին Լենինի վրա, նրանք նույնպես ձգտում եյին իշխանության: Բոլորին հայտնի յե, վոր նրանք այդ բանն անում եյին հանուն բուրժուազիայի իշխանության վերականգնման: Յերբ սպիտակ-գվարդիականները կրակեցին մեր լիազոր-ներկայացուցիչներ Վորովսկու և Վոյկովի վրա, նրանք խորհրդային յերկրի դեմ պատերազմի պրովոկացիա եյին անում և ձգտում եյին խորհրդային իշխանության տապալման: Յերբ տրոցկիստական տեռորիստները կրակեցին բոցաշունչ բոլշևիկ ու յերկրին սիրելի Ս. Մ. Կիրովի վրա, յերբ նրանք մահափորձեր եյին նյութում ու նախապատրաստում մեր առաջնորդների դեմ, նրանք կատարում եյին նույն այդ առաջադրանքը, ճանապարհ հարթելով կապիտալիզմի համար:



Պրիմորիեյի ու Պրիամուրիեյի զիջում Ճապոնիային, Ուկրաինայի զիջում Գերմանիային, Սախալինի նավթի ու Հեռավոր Արևելքի վոսկու հանքերի հանձնում Ճապոնիային, մեր հայրենիքի ունեցած հումքի՝ հանքաքարի, մանգանի, վոսկու, նավթի, ապատիտների, անտառների անսահմանափակ հանձնում Գերմանիային, հսկայական կոնտրիբուցիայի վճարում կենսամթերքով՝ յուղով, հացով, մսով, ԽՍՀՄ-ի վերածումը գերմանական տնտեսության տնտեսական կցորդի, ամեն կերպ բարյացակամ վերաբերմունք դեպի գերմանական ու ճապոնական ձեռնարկատերերը, համագործակցություն ֆաշիստների հետ միջազգային հարցերում և ոժանդակություն Գերմանիային՝ Մերձդանուբյան յերկրների ու Բալկանյան թերակղզու հափշտակման գործում, ճապոնացիների կողմից Չինաստանի հափշտակման խրախուսում ու ոժանդակում,—ահա այս է, համառոտ գծերով, «արտաքին քաղաքականության» այն ծրագիրը, վորը վոգևորում եր տրոցկիստներին իրենց լրտեսական ու դիվերսիոն աշխատանքում:

Պայքար յերկրի ինդուստրացման դեմ,

սոցիալիստական շինարարության հնգամյա պլանների դեմ, բանվոր դասակարգի բոլոր նվաճումների դեմ, կոլտնտեսությունների ցրում, խորհտնտեսությունների լիկվիդացիա, մասնավոր կապիտալիստական շահագործման վերականգնում, խորհրդային խոշորագույն ձեռնարկությունները կոնցեսիայով տալը,— ահա այս է տրոցկիստների «ներքին քաղաքականության» ծրագիրը: Ռեստավրատորական ծրագիր, լկտի կապիտալիստական ծրագիր, որով տրոցկիստները բացե ի բաց չեյին համարձակվում գնալ դեպի մասսաները:

Իզուր չե, որ դեռ տասը տարի սրանից առաջ, յերբ տրոցկիստական ծրագիրը դեռ սաղմնային թեզիսների կերպարանք ուներ, ընկեր Ստալինն անարգանքի սյունին գամեց այդ ծրագիրը, ասելով. «Օպոզիցիայի «պլատֆորմը» մեր կուսակցության քայքայման պլատֆորմ է, բանվոր դասակարգի զինաթափման պլատֆորմ, հակախորհրդային ուժերին ազատ արձակելու պլատֆորմ, պրոլետարիատի դիկտատուրան վերացնելու պլատֆորմ»:

Խորհրդային իշխանության գոյության համարյա քսանամյա ժամանակաշրջանում



մենք արդեն բազմիցս վկա յենք յեղել, թե ինչպես խորհրդային դատարանի առաջ մերկացվել է կապիտալիզմի վերականգնըման ծրագիրը, որը փորձում եյին իրականացնել համաշխարհային կապիտալի և ռուսական հակահեղափոխության զանազան գործակալներ: Սակայն սպիտակ-դավադրական դավադիրների՝ մեր առջևով անցած դատավարություններից ոչ մեկն այնպիսի խոր և հզոր ժողովրդական ցասում չեր առաջացրել, այնպիսի զայրույթ չեր հարուցել, ինչպիսին այժմ յեռում է յերկրում ընդդեմ տրոցկիստների ու նրանց չակալի ատաման Հուդա Տրոցկու:

Հիշողության մեջ վերականգնվում է անգլիական դեսպան Լոկկարտի և նրա ռուս լրտեսների դատավարությունը, որը լայնորեն արտացոլեց դասակարգային պայքարի ամբողջ սրությունը 1918 թվականին: Մեր աչքերի առջևով անցնում է այսպես կոչված «տակտիկական կենտրոնի» գործի՝ 1920 թվականին տեղի ունեցած դատավարությունը, մի կենտրոն, որի մեջ մտնում եյին բոլոր հակախորհրդային քաղաքական կուսակցությունները՝ կատաղի միապետականներից ու կադետներից սկսած մինչև

մենշևիկներն ու էսէռները։ Այդ գործը յերևան բերեց յերկրի ներսում պատրաստվող ռազմական դավադրության սերտ կապերն արտասահմանյան հակահեղափոխության հետ։

Էսէռների կուսակցության կենտրոնական կոմիտեյի 1922 թվականին տեղի ունեցած դատավարությունը բացառիկ պայծառությամբ բացահայտեց ամբողջ աշխարհի առջև, վոր ստոր կուսակցության այդ ներկայացուցիչները կազմակերպում եյին խորհրդային ղեկավարների սպանություններ, կատարում եյին զինված կողոպուտներ, դավաճանական հարաբերությունների մեջ եյին մտնում օտարերկրյա պետությունների հետ և զինված պայքար եյին բարձրացնում խորհրդային իշխանության դեմ, հանուն մեկ միակ նպատակի—կապիտալիզմի վերականգնմանը մեր յերկրում։

Հիշենք 1928 թվականի՝ Շախտիի դատավարությունը, յերբ խորհրդային դատարանի առջև կանգնեց հին տեխնիկական ինտելիգենցիայի հակահեղափոխական վերնախավը։ Մենք դարձյալ կտեսնենք, վոր վնասարարական գործողությունները, հանքերի հեղեղումն ու կործանումը, քարա-



ծուխի արդյունաբերությունը ղեկավարող կենտրոնական մարմինների աշխատանքի ձախողումը, արտասահմանից դրամ ստանալը և մյուս հանցագործությունները բացատրվում եյին այն բանով, վոր այդ մարդկանց սանձը հին տերերի ձեռքին եր, վոր այդ մարդիկ գործում եյին հօգուտ նրանց շահերի և կատարում եյին նրանց ուղղակի առաջադրանքներն ու դիրեկտիվները։

«Արդյունաբերական կուսակցության» ու մենշևիկ-ինտերվենտների «Միութենական բյուրոյի» հակահեղափոխական կազմակերպությունների՝ 1930—31 թվականներին տեղի ունեցած դատավարությունները, ինչպես նաև Կոնդրատևի—Չայանովի կուլակային կուսակցության կազմակերպությունների հայտաբերումը, մերկացրին, ցույց տվին, վոր այդ բոլոր սպիտակ-գվարդիական կազմակերպություններին համախմբում եր ծրագրային դիրքերի ընդհանրությունը։ Նրանք բոլորն էլ իրենց խնդիրն եյին համարում կապիտալիզմի վերականգնումը ՍՍՀՄ-ում։ Նրանք բոլորն էլ հույսը դրել եյին ինտերվենցիայի վրա, վորպես խորհրդային իշխանության տա-

պայման միակ ուղու։ Նրանք բոլորն էլ դիմում եյին վնասարարության, վորպես հակահեղափոխական աշխատանքի հիմնական մեթոդի։ Նրանք բոլորն էլ կազմակերպչական կապ ունեյին յեվրոպական բուրժուազիայի կառավարող շրջանների հետ, իսկ մասնավորապես մենշեվիկները կապված եյին նաև 2-րդ Ինտերնացիոնալի ղեկավար շրջանների հետ։

Այս բոլոր դատավարությունների միջով, դատավարություններ, վորոնք ԽՍՀՄ-ում հակահեղափոխության պատմության արտացոլումն են հանդիսանում,— կարմիր թելի պես անցնում են այդ բոլոր կազմակերպությունների նպատակի միասնությունը՝ կապիտալիզմի վերականգնումը։ Սակայն պետք է ուղղակի ասել, թե բնավ պատահական չէ, վոր միջազգային կապիտալն այժմ խորհրդային իշխանության տապալման գործը հանձնարարել է տրոցկիստներին։ Հենց նրանք են, վոր սոցիալիզմի ու խորհրդային ժողովրդի նկատմամբ ունեցած իրենց գազանային ատելության մեջ մեծապես գերազանցել ու առաջ են անցել իրենց նախորդներից։ Հենց նրանք են, վոր հանձինս մեր յերկրում սոցիալիզմ



կառուցելու անհնարինության թեզերի, ջանասիրությամբ «տեսական» հոգևոր զենք եյին կոփում բուրժուազիայի համար՝ խորհրդային իշխանության դեմ պայքարելու նպատակով։ Հենց նրանք են, վոր բուրժուազիայի ձեռքը տակտիկական զենք տվին խորհրդային իշխանության դեմ պայքարելու համար, հակախորհրդային ցույցով դուրս գալով փողոց և ասպարեզ տալով բուրժուական մասնագետների վնասարարական աշխատանքին։ Հենց նրանք են, վոր կազմակերպչական զենք տվին հակահեղափոխությանը, ստեղծելով ընդհատակյա հակախորհրդային կազմակերպություն և հեշտացնելով այլ հակախորհրդային խմբերի ստեղծումը։

Սակայն իրենց հետագա ստորության մեջ տրոցկիստական բանդիտները գերազանցեցին դավաճանության իրենց սեփական ռեկորդները։ Մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակն ավելի ու ավելի ակնբախ դառնալու զուգընթաց, ֆինանսական կապիտալի՝ կապիտալիստական աշխարհում հեղափոխության հանդեպ ունեցած ահից դրդված ֆաշիզմին անցնելու զուգընթաց, տրոցկիստներն իրենց ծառայությունը մա-

տուցեցին կապիտալին՝ որպես մի ջոկատ, որն իր ամբողջ նախորդ գործունեությամբ առավել նախապատրաստված է խորհրդային երկրի առաջնորդների սպանության համար, պատերազմի հրահրման, լրտեսության ու վնասարարության համար, կապիտալիզմի ռեստավրացիայի համար:

Գերմանիայի խոշորագույն կապիտալիստական ֆիրմաները, ինչպես «Բորզիգը» և «Դեմագը», որոնք առևտրական հատուկ հավելումների հաշվին պահպանում էին Տրոցկու շայկան և նրա համագործակիցներին, լավ գիտեյին, թե ինչի համար են իրենք վճարում: Շան մղումով ու նվիրվածությամբ՝ նրանց նկատմամբ, ովքեր կերակրում են իրենց, տրոցկիստներն այդ դրամներով վնասարարական ակտեր, դիվերսիա, լրտեսություն և տեռոր էին կատարում: Նրանք աշխատում էին գործել անվրեպ: Սրիկա Պյատակովը և նրա մանկլավիկները Տրոցկու դիրեկտիվներով հարվածներն ուղղում էին առավել զգայուն տեղերին: Կեմերովոյի դատավարությունն ամբողջ աշխարհի առջև ցույց տվեց, որ «Ցենտրալնայա» հանքում տեղի ունեցած վողբերգական պայթյունը, որի ժամանակ



զոհվեցին 10 հանքափոր և ծանր վիրավորվեցին 14 հոգի, Գեստապոյի վարձկանների ու Տրոցկու գործակալների ձեռքի գործն էր:

Զինվորական գնացքի ծանր աղետը Շումիխա կայարանում, որի ժամանակ զոհվեցին 29 կարմիր բանակային և վիրավորվեցին 29 հոգի, կազմակերպվել էր բանդիտ Կնյազևի կողմից, տրոցկիստական կենտրոնի ուղղակի դիրեկտիվով և ճապոնական հետախուզության ցուցումներով:

Այդ բոլոր դիվերսիոն ակտերի ժամանակ յեղած մարդկային զոհերի առատությունը մաղաչափ անգամ վարանմունք չեր առաջացնում տրոցկիստական գայլերի մեջ: Նրանք ցինիկաբար շփում էին ձեռքերը, իրենց մխիթարելով այն հույսերով, թե պայթյունները, խորտակումները, բանվորների թունավորումները գայրույթ կառաջացնեն խորհրդային իշխանության դեմ:

Չնայած այն վնասարարական ակտերի վողջ հրեշավորությանը, որ տրոցկիստներին հաջողվել է իրականացնել, այնուամենայնիվ դրանք պետք է մանկական խաղեր թվան այն հանցագործությունների համեմատությամբ, որ ժողովրդի թշնամի-

ները Տրոցկու ուղղակի ցուցումներով, գերմանական գլխավոր շտաբի ու ճապոնական հետախուզության հետ համաձայնեցված, նախապատրաստում եյին պատերազմի դեպքում ի կատար ածելու համար: Այդ վոճրագործությունների բնույթի և մասշտաբի մասին կարելի յե դատել թեկուզ այն բանից, վոր Պյատակովը կարգադրություն եր արել պատերազմն սկսվելու մոմենտին հրկիզել Կեմերովոյի քիմիական կոմբինատը՝ մեր քիմիական արդյունաբերության միջնաբերդերից մեկը, իսկ Լիվշիցը, Կնյազեվը և տրանսպորտում գործող մյուս վնասարարները պատրաստվում եյին բակտերիաներով լայնորեն թունավորելու զինվորական եշելոնները, զորքի սնման և սանիտարական մշակման կայանները:

Վորպեսզի Ֆաշիստական հարվածները խորհրդային յերկրին հասցվեյին առավել չեշտակի, տրոցկիստները չեյին սահմանափակվում դիվերսիոն, վնասարարական ակտերի իրականացմամբ ու նախապատրաստամամբ: Նրանք իրենց վրա եյին վերցրել գերմանական ու ճապոնական հետախուզությունների լրտեսական առաջադրանքների կատարումը: Ռատայչակը, Պուշինը, Գրա-



շեն գերմանական հետախուզությանը մանրամասն տեղեկություններ են տվել քիմիական արդյունաբերության սարքավորման վիճակի, պարապուրդների, ավարիաների, արտադրանքի մշակման ու շինարարական պլանների վերաբերյալ: Ստրոիլովը և Շեստովը նույնպիսի կապ եյին հաստատել գերմանական հետախուզության հետ, տնտեսական լրտեսության առաջադրանքներ կատարելով լեռնային արդյունաբերության մեջ: Կնյազեվը ճապոնական հետախուզությանը տվյալներ եր հանձնում յերկաթուղիների մոբիլիզացիոն պատրաստության, զինվորական փոխադրումների և այլնի մասին:

Յեթե տրոցկիստական կենտրոնի հրամաններով գործող բոլոր կատարողները լրտեսում եյին և իրենց յերկիրը վաճառում փոքր կտորներով, ապա բուն կենտրոնը հայրենիքը վաճառում եր խոշոր կտորներով: Հենց այդ նպատակով եյին կազմակերպվում Տրոցկու, Սոկոլնիկովի, Ռադեկի և մյուսների դավաճանական հանդիպումներն ու բանակցությունները առավել ագրեսիվ Ֆաշիստական պետությունների ներկայացուցիչների հետ:

Հանցագործությունների այս ամբողջ փունջը պսակվել էր ճյուղավորված տեռորիստական խմբերի կազմակերպմամբ՝ Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Ռոստովում, Սոչիում, Նովոսիբիրսկում և այլ քաղաքներում: Ժողովրդի թշնամի Տրոցկին շտապեցնում էր, նրա մանկլավիկները խմթանում էին, նրանց գործակալները զենքի պաշար էին կուտակում, սովորում էին կրակել, լրտեսում էին: Նրանք ամեն ինչ անում էին կուսակցության ու կառավարության ղեկավարների դեմ տեռորիստական ակտերի մի ամբողջ սերիա ի կատար ածելու համար:

Չկար այնպիսի ստորություն, որին ընդունակ չլինեյին տրոցկիստները հանուն կապիտալիզմի վերականգնման: Իսկ ի՞նչ կնշանակեր կապիտալիզմի վերականգնումը ժողովրդական մասսաների համար:

Պատմությունը բացահայտեց դրա պատասխանը բոլոր մանրամասնություններով:

Այդ են պերճախոս կերպով վկայում հակահեղափոխության տարած նույնիսկ ժամանակավոր հաղթանակների հետևանքները:



Ամեն ոք, ով թեկուզ մի փոքր ծանոթ է պատմությանը, երբեք չի մոռանա այն հրեշավոր դաժանությունները, ծաղր ու ծանակը և բռնությունը, որոնցով վարձկան մարդասպան—վերսալցիները հոշոտում էին Փարիզի պրոլետարիատին, իրենց արյունոտ խրախճանքն անելով ջախջախված Փարիզյան Կոմունայի մոխրակույտի վրա: Ոչ պակաս արտահայտիչ պատկեր է ներկայացնում սպիտակ տեռորի խրախճանքը Հունգարիայում՝ պրոլետարական դիկտատուրայի ողբերգական ջախջախումից հետո: Հաղթելով երիտասարդ խորհրդային հանրապետությանը, հունգարական դահիճները տառացիորեն ամբողջ երկիրը հեղեղեցին զինաթափ արված կոմունիստական, սոցիալ—դեմոկրատական և անկուսակցական բանվորների, նրանց կանանց ու երեխաների արյունով:

Կախաղաններ, գնդակահարություններ, բանտային խոշտանգումներ ու ծեծ—ահա այն կապիտալիստական «կարգը», որ բերին իրենց հետ սպիտակ—գվարդիական ավլինները: Չափազանց կարճատև կյանք ունեցող Բավարական խորհրդային հանրապետության խորտակումը նույնպես հավեր-

ժացավ բանվորների նկատմամբ կատարվող բացառիկ դաժան դատաստանով ու դաժան սպիտակ տեռորով, վորը ֆաշիստական խրախճանքի ամենալպիրշ ձևերի հետագա հասունացման նախաբանը հանդիսացավ:

Վերջապես, թե ինչ է նշանակում կապիտալիզմի ռեստավրացիան բանվորների, գյուղացիների ու ինտելիգենցիայի համար, դրա ամենակենդանի ու անջնջելի իլյուստրացիան հանդիսանում է սպիտակների ու ինտերվենտների տիրապետության փորձն Ուկրաինայում, Բելոռուսիայում, Արխանգելսկում, Անդրկովկասում, Սիբիրում և Հեռավոր Արևելքում՝ այն տարիներին, յերբ խորհրդային իշխանությունը ժամանակավորապես դուրս մղվեց այդ շրջաններից:

Արդեն սպիտակ-գվարդիականների գալը հենց սովորաբար ուղեկցվում էր կոմունիստների ու կոմյերիտականների ամբողջական կոտորածով, հեղափոխական բանվորների, կարմիր բանակայինների սպանությամբ, մասսայական գնդակահարություններով, խարույկների վրա տեղի ունեցող մահապատիժներով և աշխատավոր բնակչության միջնադարյան խոշտանգումներով: Կենտրոնական փողոցների ու հրապարակ-



ների լապտերներից կախում էյին առաջավոր բանվորներին ու յերիտասարդությանը, հաճախ նաև վոչ մի բանի մեջ մեղք չունեցող քաղքենիներին: Սակայն այս բոլորն սպիտակների տեռորիստական խրախճանքի միայն սկիզբն էր:

Բավական էր, վոր գյուղացիները թեկուզ վորևէ բանով արտահայտեյին իրենց դժգոհությունը կալվածատերերի վերադառնալու առթիվ, վորպեսզի ամբողջ գյուղեր ջարդի ու հրկիզման յենթարկվեյին (հիշատակենք թեկուզ գեներալ Սլաշչևի «գործունեությունը», վոր 1919 թվականի նոյեմբերին հրկիզեց Բաշտանկի և Վիտունսկի հանրապետությունների մի շարք գյուղեր): Տասնյակ հազարավոր գյուղացիներ, վորոնց միակ մեղքն այն էր, վոր կուսակցությանը չէյին պատկանում, անողորմ ծեծի էյին յենթարկվում շամփուրներով ու նագայկաներով:

Ֆաբրիկները, գործարանները, հանքերը, աները վերադարձնելով նախկին տերերին, վերացնելով բանվորների բոլոր նվաճումները, մասնավորապես աշխատանքային ժամանակվա կրճատումը, արձակուրդները, սոցիալական ապահովագրությունը և այլն,

հակահեղափոխությունը, Խորհուրդների իշխանությունը դուրս մղելուց անմիջապես հետո, անցնում էր ամենասանձարձակ տեռորի:

«Պատերազմական», «պաշտպանողական», «արտակարգ» դրություն մտցնելու պատրվակով սահմանվում էին հատուկ օրենքներ, որոնք կոչված էին սաղմի մեջ խեղդելու ազատամտության ամեն մի արտահայտություն: «Մարքսիզմի դեմ պայքարելու» պատրվակով ծավալվում էր ինտելիգենցիայի դաղանային հալածանք՝ տեռոր գիտության, արվեստի, գրականության բնագավառում: Դպրոցները, գրադարանները, գիտական ինստիտուտները փակվում էին: Կրոնական խավարամոլները ցնծում էին:

Սրանք են քաղաքացիական պատերազմի ժամանակ մեր երկրի առանձին շրջաններում տեղի ունեցած կապիտալիզմի վերականգնման հետևանքները: Հեշտ է պատկերացնել, թե ինչի էին ձգտում անիծյալ տրոցկիստները, աշխատելով վերականգնել կապիտալիզմը խորհրդային երկրում՝ այն բանից հետո, երբ նրա բուն արմատներն այստեղ արմատախիլ են արված հիմքից:



Տրոցկիստական թշնամին անհամեմատ ավելի ստոր է, քան հակահեղափոխության որևէ այլ ջոկատ: Մենք հեշտությամբ ճանաչում և հարվածում էինք բացահայտ թշնամուն: Շատ ավելի չարը ու ավելի վտանգավոր չեղան նրանք, ովքեր կարողացել էին սողոսկել մեր կուսակցական տան մեջ՝ մեր զգաստությունը խաբելու համար: Գործադրելով իրենց երկերեսանի տակտիկան, մեղրը շրթունքներին, Հուդայի արցունքներն աչքերին, նրանք դանակը թաքցնում էին ծոցում և հարված էին հասցնում թիկունքից: Սողոսկելով կուսակցության շարքերը, սողալով, հարմարվելով, դիմակավորվելով, այդ նենգ իժերը թափանցում էին առավել պատասխանատու բնագավառներ, սողում էին դեպի իշխանությունը: Այդ քաղաքական ավանտյուրիստներն ամեն մի ճեղքը, զգաստության ամենափոքր թուլացումն օգտագործում էին մեզ վնաս հասցնելու, ապականելու համար:

Միապետական–գեներալները, կադետները, էսէռները, մենշևիկները և խորհրդային իշխանության այլ թշնամիները փորձում էին կալվածատերերին ու կապիտա–

լխաներին վերադարձնել այն, ինչ պրոլե-տարական սոցիալիստական հեղափոխու-թյունը խլել էր նրանցից: Տրոցկիստական բանդիտները ոչ միայն փորձում են մեզ-նից խլել նվաճածը, այլև իրենց ֆաշիստա-կան տերերին մատուցել բանվորների ու գյուղացիների ջանքերով ստալինյան երկու հնգամյակների ընթացքում ստեղծված տասնապատիկ ավելի արժեքները:

Դենիկինները և Միլյուկովները ջանում էին թեկուզ և քաղաքավարության համար իրենց ճակատին պահել «անբաժանելի» Ռուսաստանի վերաբերյալ բանավոր շաղա-կրատությունը: Տրոցկիստներն այդ սպի-տակ-գվարդիականներից էլ ավելի ցած գլորվեցին: Գերմանական, իտալական, ճա-պոնական ֆաշիստ ագրեսորները փորձում են ժողովրդի իրենց կողոպուտը քողարկել «հայրենասիրության» թզենու տերևով, թե-կուզ և այդ բառի իրենց բուրժուական հաս-կացողությամբ: Իսկ տրոցկիստները բա-ցահայտորեն ստորագրություն են տալիս, որ իրենք մեր երկրի մեծածախ ու ման-րածախ առևտրով են զբաղված: Կարո՞ղ է արդյոք լինել ավելի զարշելի տեսարան,



կարո՞ղ է արդյոք լինել ավելի խոր ան-կում:

Դատավարության հսկայական նշանակու–
հըրդային արդարադատության պատժող սուրն իջավ տրոցկիստ ճիվաղների գլխին: Սակայն միամտություն կլիներ կարծել, թե դատավճիռն ի կատար ածելով վերջա-նում է պայքարը ժողովրդի թշնամիների դեմ:

Դատավարության հսկայական նշանակու-թյունն այն է, որ նա մերկացրեց այն մե-թոդները, զենքը, որոնցով օգտվում է թշնամին: Թշնամու դավերը ճանաչելը դյ-նում է մեզ նրա դեմ պայքարելու համար: Խնդիրն այժմ այն է, որ մերկացնենք ու հարվածենք թշնամուն, ինչպիսի դիմակի տակ էլ թաքնված լինի նա:

(«ՊՐԱՎԴԱ»)

# ՅԵՐԿՐՈՐԴ ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ ՏԱՐԻՆ ՅԵՎ ԱԳԻՏԱՏՈՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Մեր մեծ Հայրենիքն առույգ, բերկրալից, փայլուն հաղթանակներով սկսեց 1937 թվականը, ստախանովյան 2-րդ տարին:*

*1937 թվականը նոր ստալինյան Սահմանադրության առաջին տարին ե: 1937 թվականը Հոկտեմբերյան Մեծ սոցիալիստական Հեղափոխության 20-ամյակն ե: 1937 թվականը 2-րդ հնգամյակի ավարտման տարին ե, վորի ծրագիրը մի շարք կարեվորագույն ճյուղերում կատարվեց ու գերակատարվեց դեռ այս տարվա նախորյակին: 1937 թվականը սոցիալիզմի նոր, մեծամեծ հաղթանակների տարին ե:*

*Վիթխարի յե սոցիալիստական շինարարության 1937 թվականի ծրագիրը: ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի վերջերս ավարտված յերրորդ նըստաշրջանը հաստատեց 1937 թվականի պետական բյուջեն: Այդ բյուջեյի թվերում մարմնացած են սոցիալիզմի մեծ յերկրի*



*ժողովրդական տնտեսության ուղղությունը տվող և կազմակերպող 1937 թվականի սոցիալիստական պլանի հիմնական գծերը:*

*Համարյա* 100 միլիարդանոց *պետական բյուջեն (իսկ տեղական բյուջեների հետ միասին՝ 100-ից բարձր), ավելի քան 39 միլիարդ ռուբլի ներդրում ժողովրդական տնտեսության մեջ, ավելի քան 26 միլիարդ հատկացումներ սոցիալ-կուլտուրական ձեռնարկումներին, ավելի քան 20 միլիարդ հատկացում յերկրի պաշտպանությանը— ահա մի քանի թվեր, վորոնք բնորոշում են սոցիալիզմի յերկրի այն հզորությունը, վորն այնքան ցայտուն կերպով տպավորված ե նրա բյուջեյում:*

*Այդ բյուջեյի կատարումն ապահովվում ե ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատանքի պլաններով: Բյուջեյի հսկայական աճը հիմնված ե տնտեսության բոլոր ճյուղերի աճման բարձր տեմպի վրա:*

*Մեր արդյունաբերության արտադրանքն այս տարի աճում ե 20 տոկոսով, մանրածախ ապրանքաշրջանառությունն ընդարձակվում ե ավելի քան 23 տոկոսով: Այս տարի գործարկվում են նոր գործարաններ, ֆաբրիկներ ու յերկաթուղիներ. 34,7 մի-*

լիարդ ռուբլի հիմնական դրամագլխով։ Ստեղծվում է 500 նոր մեքենատրակտորային կայան, սոցիալիստական հողագործության մեքենայացումն ավելանում է ևս 66 հազար տրակտորով և 55 հազար կոմբայնով։

Առանձնապես պետք է նշանել այն փաստը, որ այս տարի սպառման միջոցների արտադրությունը վորոշված է 20,8 տոկոս։ Այնինչ արտադրության միջոցների ավելացումը ծրագրված է 19,5 տոկոս։ Այդ փաստով կրկին ու կրկին դրսևորվում է կուսակցության ու կառավարության անդուլ հոգատարությունը խորհրդային ժողովրդի հարաճուն պահանջները բավարարելու ասպարեզում։

Անտարակույս, 1937 թվականի վիթխարի ծրագիրը կկատարվի ու կգերակատարվի, վորովհետև այդ գործը գտնվում է բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի վստահելի ձեռքում, ստալինյան Սահմանադրության մարդկանց ձեռքում, ԽՍՀՄ-ի քաղաքացիների ձեռքում։

Բայց դա ինքնահոսով չի գա։ Հաղթանակը պետք է կազմակերպել։

Պլանի կատարման մեջ վճռական դեր պետք է խաղա աշխատանքի արտադրողա-



կանության բարձրացումը։ Արտադրողականությունը պետք է բարձրացնել՝ ծանր արդյունաբերության մեջ 19,8 տոկոսով, թեթև արդյունաբերության մեջ 18,3 տոկոսով, սննդարդյունաբերության մեջ 19,2 տոկոսով և այլն։

Աշխատանքի արտադրողականության այդ աճին մենք կհասնենք, ըստ ամենայնի բարձրացնելով սոցիալիստական մրցությունը և նրա բարձր ձևը՝ ստախանովյան շարժումը։

Եվ մենք արդեն ականատես ենք սոցիալիստական մրցության նոր, հսկայական վերելքին։

Խորհրդային յերկրի աշխատավորները, վոգեշնչված ստալինյան Սահմանադրության հաստատմամբ, վոգեշնչված անցյալ տարվա հաղթական արդյունքներով, մեծագույն խանդավառությամբ բազմապատկում են ստախանովականների շարքերը, ցույց են տալիս փայլուն ստախանովյան աշխատանքի նոր օրինակներ։ Բանվոր դասակարգը հրապարակ է հանում աշխատանքի բարձր արտադրողականության նորանոր վարպետներ։

Յուրաքանչյուր օրը տեղեկություններ է

թերում առաջավոր բանվորների նոր ռեկորդների մասին, յուրաքանչյուր որ ստվարանում են նորմաները գերակատարողների պանծալի շարքերը, յուրաքանչյուր որ աճում է սոցիալիզմի յերկրի անվանի մարդկանց թիվը:

Պողպատաձուլ Զայկովսկին հասավ այնպիսի ռեկորդի, վորպիսին չգիտի աշխարհի վոչ մի յերկիր: Հանքահատ Գրուշկոն 4 օրում կատարեց ամսի հանույթի ամբողջ ամսական՝ հունվարի նորման:

Ի՞նչն է առաջ մղում այդ մարդկանց: Ի՞նչը հարկադրեց, որինակ, ընկեր Զայկովսկուն, այն բանից հետո, յերբ նա հունվարի 5-ին առաջին հերթափոխության ժամանակ տվեց 17 տոնն պողպատ հնոցի մի քառակուսի մետր հատակից, չհանգստանալ ձեռք բերվածով, նորից լծվել աշխատանքի և նույն օրը 2-րդ հերթում տալ 18,6 տոնն:

Ստախանովականների այդ հերոսություններում վո՞րն է հիմնական մղիչ ուժը: «ԽՍՀՄ-ում աշխատանքը հանդիսանում է պարտականություն և պատվի գործ...» (Սահմանադրության 12-րդ հոդվածը): Մեր յերկրում բանվորների, կոլտնտեսա-



կաների, ինժեներների, տեխնիկների հերոսության հիմնական մղիչ ուժն է Հայրենիքի սերը: Հասկանալի յե, վոր մեծ դեր է խաղում նաև աշխատավարձը՝ ո՞ւմ համար հաճելի չե ավելի վաստակել, ավելի լավ, ունևոր և կուլտուրական կյանք վարելու համար: Այնուամենայնիվ մեր հաղթանակների հիմնական հզոր աղբյուրն է հատկապես խորհրդային մեծ հայրենասիրությունը, սերը դեպի Հայրենիքը, սերը դեպի կուսակցությունը, դեպի ժողովուրդների առաջնորդ Ստալինը, մեծագույն նվիրվածությունը սոցիալիզմին, վորը հիանալի կյանք է ստեղծել խորհրդային ժողովրդի համար:

Այդ պատճառով, ամեն մեկը շտապում է իր աշխատանքի հաջողությունները հաղորդել ամբողջ խորհրդային ժողովրդին, հաղորդել իր հաղթանակի մասին Կրեմլին, ռապորտ տալ մեծ Ստալինին ու նրա զինակիցներին:

Ահա թե ինչու պողպատաձուլների սոցիալիստական մրցությունն ապշեցուցիչ արագությամբ շարժեց արդյունաբերության բոլոր ճյուղերը, տրանսպորտը և այլն:

1937 թվականը պետք է դառնա և արդեն

դառնում է նոր, չտեսնված աշխատանքային վերելքի տարի մեր յերկրում։

Խնդիր է դրված՝ սոցիալիստական մրցության և նրա բարձր ձևի՝ ստախանովյան շարժման մեջ ներգրավել տառացի յուրաքանչյուր բանվորին, յուրաքանչյուր կոլտնտեսականին։

Այդ խնդիրը մեծ, պատվավոր պարտականություններ է դնում մեր ագիտատորների, կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկների վրա։

Նրանք իրենց ամենօրյա բացատրական աշխատանքում պետք է հսկայական ուշադրություն նվիրեն ստախանովյան շարժման հարցերին, անխոնջ կերպով ագիտացիա մղեն նրա խոր ու լայն զարգացման համար։

Ագիտատորները պետք է անդուլ կերպով, ուշադրությամբ հետևեն խորհրդային ժողովրդի այդ հզոր շարժման բոլոր նոր ծիլերին, ստախանովյան հաղթանակների նոր, փայլուն փաստերին, ցույց տան դրանք ու պատմեն դրանց մասին իրենց կոլեկտիվում բանվորներին, կոլտնտեսականներին ու մեր յերկրի մյուս բոլոր աշխատողներին։ Պետք է բացատրել, վոր ստա-



խանովական կարող է դառնալ ամեն մի բանվոր, ամեն մի կոլտնտեսական, վոր և՛ Ստախանովը, և՛ Մարիա Դեմչենկոն, և՛ Զայկովսկին, և՛ Մակար Մազայը—նրանք բոլորն էլ շարքային բանվորներ, կոլտնտեսականներ են։ Նրանք յերկրի անվանի մարդիկը դարձան այն պատճառով, վոր աշխատելով ազնվորեն ու բարեխղճորեն, բոլշևիկորեն տիրապետեցին նոր տեխնիկային, իրենց կատարած գործի մեջ դրին իրենց ամբողջ հոգին, իրենց աշխատանքային ամբողջ հնարամտությունը, իրենց բոլոր գիտելիքներն ու նախաձեռնությունը։

Ագիտատորը պետք է լայնորեն մասսայականացնի ստախանովյան աշխատանքի կոնկրետ փորձը, աշխատի, վոր ստախանովյան նորմուծությունները անհապաղ արմատացվեն ամբողջ բրիգադում, ամբողջ ցեխում և այլն, վոր դրանք գործադրվեն վոչ միայն առանձին առաջավորների աշխատանքի տեղում, այլև յուրաքանչյուր բանվորի աշխատանքի տեղում։

Արտադրական նոր նորմաներն արդեն յուրացրել է բանվորների գերակշռող մեծամասնությունը։ Շատ բանվորներ դրանք գերակատարում են 2—3 և ավելի չափ։

Սակայն այդ հաջողությունների մեջ չի կարելի չնկատել այն բանվորներին, վորոնք դեռ քաշ են գալիս պոչում, հետ են մնում: Ագիտատորի կարևորագույն խնդիրն է՝ ուշադրությամբ շրջապատել վոչ միայն առաջավորներին, այլև հետ մնացողներին, ոգնել նրանց աշխատանքում, յերևան բերել նրանց հետ մնալու պատճառները, ոգնել նրանց տիրապետելու պլանը կատարողների ու գերակատարողների փորձին: Չպետք է մոռանալ սոցիալիստական մրցության հիմնական սկզբունքը՝ հասնել լավագույններին և ձգտել ընդհանուր վերելքի: Յեվ քանի դեռ այս կամ այն բրիգադում, այս կամ այն ճակատամասում կան նորմաները թերակատարող թեկուզ առանձին բանվորներ, չի կարելի հանգստանալ: Պետք է համառորեն, անդուլ կերպով, որեցոր աշխատել, վոր բոլոր բանվորները գլխովին կատարեն ու գերակատարեն նորմաները:

Չկա ավելի վատ բան, յերբ ագիտացիան հանգում է սոսկ հանդիսավորության, սոսկ «ընդհանուր առմամբ և ամբողջովին վերցրած» դատողություններ անելու ստախանովյան շարժման մասին: Պետք է ագիտացիա մղել կոնկրետ փաստերով, պետք է



ուշադրության կենտրոնում դնել աշխատանքի տվյալ ճակատամասում, տվյալ բրիգադում այդ շարժումը զարգացնելու փորձնական ձեռնարկումները:

Ագիտատորը յերբեք չպետք է դնա պոչից: Մենք գիտենք, վոր աշխատավորների մեջ դեռ պատահում են առանձին հետամնաց տարրեր, վորոնք չգիտեն և չեն հասկանում ստախանովյան շարժման զարգացման նշանակությունն ու կարևորությունը ընդհանուր գործի համար՝ սոցիալիզմի համար, յուրաքանչյուր աշխատավորի ավելի լավ, բերկրալից, ունևոր կյանքի համար: Ագիտատորի խնդիրն է՝ մատների արանքով չնայել այդպիսի մարդկանց, այլ համառորեն համոզելով, զգայուն մոտեցում ցուցաբերելով, սոցիալիստական մրցության համար վոտքի հանել նույնիսկ ամենահետամնաց աշխատավորին և բռնկել նրան ստախանովյան խանդավառությամբ:

Ագիտացիայում հսկայական դեր է խաղում որինակի ուժը: Այդ քանիցս մատնանշել է Վ. Ի. Լենինը, այդ մշտապես շեշտում է խորհրդային ժողովրդի ուսուցիչ, բարեկամ ու առաջնորդ ընկ. Ստալինը: Որինակի ուժը պետք է լայնորեն ոգտագոր-

ծել հանուն ստախանովյան շարժման մեջ մղած ագիտացիայում, ընդորում ոգտագործել վոչ միայն ուրիշների տված որինակը, այլև հենց ագիտատորի իր անձնական որինակի ուժը: Մեզ մոտ դեռ կան փաստեր, յերբ ագիտատորը ագիտացիա յե մղում ստախանովյան շարժման համար և միևնույն ժամանակ ինքը ստախանովական չե, իր կատարած գործին ստախանովյան մոտեցում ցուցաբերելու որինակ չի տալիս: Բնական ե, վոր այդպիսի ագիտացիան չի կարող գործունակ, համոզիչ լինել: Լենինյան-ստալինյան կուսակցության գոյության ամբողջ պատմության ընթացքում բոլշևիկները մասսաներին մեծ, հերոսական գործերի համար վոտքի յեն հանել հատկապես շնորհիվ այն հանգամանքի, վոր միշտ իրենք են ընթացել մասսաների առաջին շարքերում, միշտ իրենք են ցույց տվել լավագույն որինակը: Այդպես պետք ե լինի նաև ստախանովյան շարժման համար մղվող ագիտացիայում:

Խորհրդային ժողովուրդը, վորպես անխորտակելի, հզոր զորություն, առաջ ե գնում կոմունիզմի մեծ ճանապարհով: Զուր են մեր յերկրում հին աշխարհի դեռ վերջնականապես չջախջախված ոձերի ու իժե-



րի, ֆաշիզմի տրոցկիստական-զինովևյական գործակալների ու նրանց աջ գործակիցների ջանքերը՝ դանդաղեցնել, արգելակել այդ հաղթական առաջընթացը: Տիտան ժողովուրդն իր հզոր շարժման ընթացքում անողոքաբար կոտորի այդ ամբողջ զարշելիքը, մինչև վերջը կմաքրի նրանից իր խորհրդային հրաշալի յերկիրը: Իր կուսակցության ղեկավարությամբ, մեծ առաջնորդ ընկ. Ստալինի հանճարեղ ղեկավարությամբ, ստալինյան Սահմանադրության դրոշի տակ, Խորհրդային Միության ժողովուրդները 1937 պատմական տարում ձեռք կբերեն նոր, մեծամեծ հաղթանակներ, ավելի լավ, բերկրալից ու գեղեցիկ կդարձնեն իրենց կյանքը:

## ՀՐԱՇԱԼԻ ԹՎԵՐ

## ԻՆՉԻ՞ ՀԱՄԱՐ ԵՆՔ ՊԱՅՔԱՐԵԼՈՒ ՄԵՆՔ 1937 ԹՎԱԿԱՆԻՆ

*Առաջիկա յերկրորդ ստախանովյան տարում մենք պայքարելու յենք՝*

*Հանուն* ԽՍՀ Միության պետական բյուջեի ընդհանուր ծավալի 98,1 *միլիարդ ռուբլի յեկամուտներով և* 97,1 *միլիարդ ռուբլի ծախսերով: Այդ թվից* ժողովրդական տնտեսության ֆինանսավորման *համար*՝ 39,6 *միլիարդ ռուբլի*, սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների *համար*՝ 26,6 *և յերկրի* պաշտպանությունը ֆինանսավորելու համար՝ 20,1 *միլիարդ ռուբլի*:

*Հանուն ժողովրդական տնտեսության* հիմնական աշխատանքների ծավալի *իրականացման*՝ 32,6 *միլիարդ ռուբլի գումարով, հիմնական աշխատանքների արժեքի* 10,5 *տոկոս իջեցմամբ և հանուն նոր ու վերակառուցվող ձեռնարկությունների գործարկման*՝ 34,9 *միլիարդ ռուբլի գումարով*:



*Հանուն ԽՍՀՄ-ի* ամբողջ արդյունաբերության արտադրության ընդհանուր ծավալի՝ 103 *միլիարդ ռուբլի գումարով* (1926—27 *տարվա անփոփոխ գներով*), *վոր կազմում ե* 20 *տոկոս աճ, համեմատած* 1936 *թվականի հետ*:

*Հանուն արտադրության միջոցների արտադրման* 60 *միլիարդ ռուբլի գումարով, վոր կազմում ե* 19,5 *տոկոս աճ, և հանուն* սպառման միջոցների *արտադրման* 43 *միլիարդ ռուբլի գումարով, վոր կազմում ե* 20,8 *տոկոս աճ*:

*Հանուն կարևորագույն առաջադրանքների կատարման ու գերակատարման արդյունաբերության հետևյալ ճյուղերում.*

*Ելեկտրոեներգիայի արտադրումը* — 40.500.000.000 *կիլովատ-ժամ*

*Քարածխի հանույթը* 150.150.000 *տոնն*

*Այդ թվից*

*Դոնբաս* . . . . 88.000.000 »

*Նավթի ու գազի հանույթը* . . 34.500.000 »

*Թուջի արտադրությունը* 16.012.000 »

*Պողպատի արտադրությունը* 20.150.000 *տոնն*

*Մամլած մետաղի արտադրությունը* 15.623.000 *տոնն*

Մեքենաշինության ու մետաղամշակման իրերի արտադրությունը 30·300·000·000 ռ.

Այդ թվից՝

մետաղահատ դազգյահներ 41016 հատ

Շոգեքարշ (պայմանական «Э» և «СУ») Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատի համար . . . . 1900 հատ

Ապրանքատար վագոն (յերկասռնի վագոնների հաշվով) Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատի համար
86·000 հատ

Տրակտոր (2,590·000 ձիու ուժի ընդհանուր կարողությամբ) . 79·000 հատ

Կոմբայն . . . . . 55·000 »

Ավտոմոբիլ . . . 220·000 »

Հեծանիվ . . . ·900·000 »

Մոտոցիկլ . . . . 15·000 »

Լուսանկարչական ապարատ
298·500 »

Պատեֆոն . . . 1·000·000 »

Պատեֆոնի պլաստինկա 50·000·000 »

Շինանյութի ու վառելանյութի փոխադրում . . . 273·700·000 խոր. մետր

Սղոցած փայտեղեն 38·800·000 » »

Թուղթ . . . . . . 955·350 տոնն



Կահույք (խոշոր արդյունաբերության գծով) . . . . 900·000·000 ռուբլի

Բամբակեղեն գործվածքներ
4·084·100·000 մետր

Վուշե գործվածքներ 380·000·000 »

Բրդեղեն գործվ. 108·090·000 »

Մետաքսեղեն գործվ. 58·270·000 »

Կոշկեղեն . . . 190·000·000 զույգ

Միս (Սննդարդյունաբերության ժողկոմատի արտադրությունը) . 800·000 տոնն

Ձուկ (վորսած) . . 1·800·000 »

Շաքար . . . . . 2·600·000 »

Կոնսերվ 1·425·000·000 պայմանակ. տուփ

Հրուշակեղեն . . 1·073·600 տոնն

Հաց . . . . . . 17·000·000 »

Հանուն հացահատիկային մշակույթների մի հեկտարի 10,4 ցենտներ միջին բերքատվության և հացահատիկային մշակույթների 6·613 միլիոն փութ արտադրանքի:

Հանուն բամբակի 13,5 ցենտներ բերքատվության և 46,1 միլիոն փութ թել-բամբակի արտադրանքի:

Հանուն շաքարի ճակնդեղի 205 ցենտներ բերքատվության (կոլտնտեսությունների համար) և շաքարի ճակնդեղի 246 միլիոն ցենտներ ընդհանուր արտադրանքի:

*Հանուն* վուշի 4 *ցենտներ* բերքատվության *և թել-վուշի* 8·450 *հազար ցենտներ արտադրանքի:*

*Հանուն* որական 95 *հազար վագոն* միջին բեռնման *յերկաթուղային տրանսպորտում, տարեկան* 565 *միլիոն տոնն բեռի փոխադրման յերկաթուղիներով և յերկաթուղային տրանսպորտի կատարած* 493,5 *միլիարդ տոնն-կիլոմետր ընդհանուր աշխատանքի:*

*Հանուն* աշխատանքի արտադրողականության աճման՝ 1935 *թվականի մակարդակի դիմաց—արդյունաբերության մեջ* 19,5 *տոկոսով, շինարարության մեջ* 22,5 *տոկոսով, յերկաթուղային տրանսպորտի փոխադրումների ասպարեզում* 16 *տոկոսով, գետային տրանսպորտի փոխադրումների ասպարեզում* 29,1 *տոկոսով և ծովային տրանսպորտի փոխադրումների ասպարեզում* 16,2 *տոկոսով, Խորհտնտժողկոմատի խորհտնտեսություններում* 41 *տոկոսով:*

*Հանուն պետական ու կոոպերատիվ առևտրի* 131 *միլիարդ ռուբլի* մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր չափի:

*Հանուն* տարրական, վոչ լրիվ և լրիվ միջնակարգ դպրոցների *աշակերտների* 30



*միլիոն հոգի ընդհանուր կոնտինգենտի:*

*Հանուն* 57,6 *հազար* ակմբային հիմնարկների աշխատանքի (*առանց արհմիութենական ակումբների*) *և լուսժողկոմատների* 11,3 *հազար* մասսայական գրադարանների *աշխատանքի:*

*Հանուն* 30,4 *հազար* բեմական ձեռնարկությունների (*թատրոնների, կրկեսների, կինոների և այլն*) *աշխատանքի:*

Հանուն սոցիալիստական մրցության նոր վերելքի և նրա ավելի բարձր ձևի՝ ստախանովյան շարժման, հանուն 2-րդ հնգամյակի վերջին տարվա՝ 1937 թվականի պլանի առաջադրանքների նախաժամկետ կատարման:



ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ



Կ (բ) Կ ԿԿ հրատարակչություն — Երևան Հայաստան

Շարունակվում է 1937 թ. բաժանորդագրությունը

„ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ"-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին.